Պրոլետարներ բոլոր երկրների միացե՛ք

ՀԿ(բ)Պ ԿԵՆՏԿՈՄԻ
ՊՐՈՊԱԳԱՆԴԱՅԻ ԵՎ
ԱԳԻՏԱՑԻԱՅԻ ԲԱԺԻՆ



# Ագիտատորի
# ԲԼՈԿՆՈՏ

№ 6 1949

## ԲՈՎԱՆԴԱԿՈՒԹՅՈՒՆ



---

Խմբագրության հասցեն.— Երևան, Նալբանդյան 32, ՀԿ(բ)Պ Կենտկոմի Պրոպագանդայի և ագիտացիայի բաժին, հեռախոս՝ 3—52—78։

---

# ՍՈՑԻԱԼԻՍՏԱԿԱՆ ՏԵՐՈՒԹՅԱՆ ՊԵՏԱԿԱՆ ԲՅՈՒՋԵՆ

1949 թվի մարտի 10-ից 14-ը կայացավ Սովետական Սոցիալիստական Ռեսպուբլիկաների Միության Գերագույն Սովետի 5-րդ սեսիան։ Ժողովրդի ընտրյալները մի քանի օր տևող գործարար աշխատանքի մթնոլորտում ամենայն ուշադրությամբ և մանրազնին կերպով քննության առան և հաստատեցին ՍՍՌՄ 1949 թվի Պետական բյուջեն, որն արտահայտում է ժողովրդական տնտեսության բնագավառում ձեռք բերած նվաճումները և այն խնդիրները, որոնք կանգնած են մեր երկրի ժողովրդի առաջ հետպատերազմյան Ստալինյան հնգամյակի պլանները ժամկետից շուտ կատարելու համար մղվող պայքարում։

Բոլշևիկների պարտիայի ղեկավարությամբ սովետական ժողովուրդը անցյալ տարի մեծագույն հաղթանակներ ձեռք բերեց արդյունաբերության, գյուղատնտեսության, տրանսպորտի, կուլտուրայի ծաղկման և աշխատավորների նյութական դրության

բարելավման բնագավառում։ Արդյունա-
բերության համախառն արտադրանքի թո-
ղարկման պլանը 1948 թվին կատար-
վեց 106 տոկոսով, իսկ հնգամյակի առաջին
երեք տարիների պլանը՝ 103 տոկոսով։
1947 թվի համեմատությամբ արտադրու-
թյան ծավալը աճեց 27 տոկոսով։
Անշեղորեն իրագործելով ՀամԿ(բ)Պ
Կենտկոմի փետրվարյան պլենումի պատմա-
կան որոշումը սոցիալիստական հողա-
գործության աշխատավորներն աճեցրին
հացահատիկային ու տեխնիկական կուլ-
տուրաների բարձր բերք։ Հացահատիկային
կուլտուրաների համախառն բերքը ամբողջ
ՍՍՌՄ-ում, չնայած Պովոլժյեյի շրջանների
մեծ մասում տեղի ունեցած երաշտին, կազ-
մեց ավելի քան 7 միլիարդ փութ և գրեթե
հասավ նախապատերազմյան մակարդակին,
իսկ հացահատիկային կուլտուրաների միջին
բերքատվությունը հեկտարից գերազանցեց
1940 թվի մակարդակը։
Սովետական Միության ժողովուրդների
համերաշխ ընտանիքում 1948 թվին ժողո-
վրդական տնտեսության բոլոր բնագա-
վառներում մեծ նվաճումներ ձեռք բերեց
նաև Հայկական ՍՍՌ աշխատավորությունը։
Ռեսպուբլիկայի արդյունաբերությունը 1948



թվի համախառն արտադրանքի թողարկման
պլանը կատարեց 110,6 տոկոսով, 22 տո-
կոսով ավելի քան 1947 թվին և 66 տոկոսով
ավելի, քան 1940 թվին։
1948 թվին ռեսպուբլիկայի գյուղատըն-
տեսության համախառն արտադրանքը նա-
խապատերազմյանից գերազանցեց ավելի
քան 30 տոկոսով։ Ցանքատարածություն-
ներն ընդարձակվեցին 8,6 տոկոսով։ Կոլ-
խոզները ժամկետից շուտ կատարեցին
տեխնիկական կուլտուրաների՝ բամբակի,
ծխախոտի և շաքարի ճակնդեղի ցանքա-
տարածության ընդարձակման հնգամյա
պլանը։ Ծխախոտի և կարտոֆիլի զբաղեց-
րած տարածությունը, 1940 թվի համեմա-
տությամբ, համարյա կրկնապատկվեց, իսկ
բազմամյա խոտաբույսերի ցանքերն ավե-
լացան 60 տոկոսով։ 1948 թվին հացահատի-
կային կուլտուրաների բերքը, 1940 թվի
համեմատությամբ ավելացավ 42 տոկոսով։
Կատարվեց նաև 1948 թվի անասնաբուծու-
թյան պլանը։
Մեծ են հաջողությունները գյուղի էլեկ-
տրիֆիկացման բնագավառում։ 1948 թվին
էլեկտրիֆիկացված է մոտ 200 կոլխոզ։
Այդ բոլորի հիման վրա 1949 թվի փետըր-
վարի 28-ին ՍՍՌՄ Մինիստրների Սովետի

և ՀամԿ(բ)Պ Կենտկոմի որոշմամբ մասսայական սպառման ապրանքների պետական մանրածախ գների նոր իջեցում կատարվեց։

Սոցիալիստական էկոնոմիկայի աճող վերելքի հիման վրա կատարվող գների իջեցումը վկայում է սոցիալիստական սիստեմի առավելությունները, նրա գերազանցությունը կապիտալիստական սիստեմի նկատմամբ։ Կապիտալիստական երկրներում, այդ թվում և ԱՄՆ-ում շարունակվում է արտադրության անկումը։ Ուժեղանում է ինֆլյացիան, քաոսը, օրավուր ավելանում է գործազուրկների բանակը, իջնում է ռեալ աշխատավարձը, նվազեցվում է աշխատավորների առանց այն էլ ցածր գնողունակությունը։ ԱՄՆ-ում կատարված հաշվառումներով ամերիկյան քաղաքի յուրաքանչյուր յոթերորդ բնակիչ սովահար վիճակում է գտնվում։ 10 միլիոն գյուղացիություն ապրում է ծանր կարիքի մեջ։ Այդ այն ժամանակ, երբ տարեց տարի աճում են ամերիկյան մոնոպոլիստների շահույթները։ Այդ շահույթները 1947 թվին կազմեցին մոտ 30 միլիարդ դոլլար և 1939 թվի համեմատությամբ ավելացել էին 4,5 անգամ, իսկ 1948 թվին դրանք էլ ավելի են աճել։ Դրու-



թյունն ավելի վատ է Եվրոպայի մարշալլիզացիայի ենթարկված երկրներում։

Երկու աշխարհի՝ սոցիալիզմի երկրի էկոնոմիկայի վերելքի և կապիտալիզմի ընդհանուր ճգնաժամի աճման պայմաններում գումարվեց ՍՍՌՄ Գերագույն Սովետի 5-րդ սեսիան, որը հաստատեց ՍՍՌՄ Պետական բյուջեն։

ՍՍՌՄ Գերագույն Սովետի սեսիան հաստատեց բյուջեն՝ եկամուտների գծով ընդամենը 446.043.323 հազար ռուբլի և ծախսերի գծով ընդամենը 415.355.205 հազար ռուբլի. ծախսերի նկատմամբ եկամուտների 30.418 118 հազար ռուբլի գումարի գերազանցումով և բացի դրանից ռեսպուբլիկական ու տեղական բյուջեների գծով բյուջետային մնացորդների առ 1—ն հունվարի 1950 թվի փոխանցիկ մնացորդներ 2.737.166 հազար ռուբլի։

Սովետական պետության բյուջեի ծախսերի հիմնական մասը հատկացվում է ժողովրդական տնտեսությունը ֆինանսավորելու և սոցիալ-կուլտուրական միջոցառումների համար։ Այդ են ցույց տալիս մեջ բերվող թվերը։

Ժողովրդական տնտեսության ֆինանսավորման համար հատկացված է 152,5 մի-

լիարդ ռուբլի, այսինքն բյուջեի բոլոր ծախսերի 36,7 տոկոսը, կամ 5.042 միլիոն ռուբլի ավելի, քան 1948 թվին։ Բացի դրանից, այդ նույն նպատակով տնտեսական օրգաններն իրենց շահույթներից կհատկացնեն 37,4 միլիարդ ռուբլի։

Այսպիսով, 1949 թվին ժողովրդական տնտեսության մեջ ներդրումների ընդհանուր գումարը ի հաշիվ պետական բյուջեի և շահույթների կկազմի 189,9 միլիարդ ռուբլի և 1948 թվի համեմատությամբ համապատասխան ծախսերը կգերազանցեն 27 միլիարդ ռուբլով։

1949 թվին կատարվելու է կապիտալ աշխատանքի մեծ ծրագիր։ Կապիտալ ներդրումների ֆինանսավորման համար նախատեսվում է բյուջեից հատկացնել 79,8 միլիարդ ռուբլի՝ 1948 թվի 57,2 միլիարդ ռուբլու դիմաց։ Միաժամանակ տնտեսական կազմակերպությունների սեփական միջոցների ներդրումը շահույթների աճի շնորհիվ ավելանում է և 1948 թվի ինը միլիարդ ռուբլուց 1949 թվին հասնում է 25,7 միլիարդ ռուբլու։

Այս տարի արդյունաբերության շինարարության հետ միասին զգալի միջոցներ է ներդրվում բնակարանային շինարարության



մեջ, որը էական նշանակություն ունի սովետական մարդկանց կենսամակարդակը բարձրացնելու համար։

Տնտեսական հսկայական շինարարության հետ միասին իրականացվում է սոցիալական միջոցառումների մեծ պլան։ Այդ նպատակների համար այս տարի հատկացվում է 119.214 միլիոն ռուբլի, որը 13.405 միլիոն ռուբլով, կամ 12,9 տոկոսով գերազանցում է 1948 թվից։

Սոցիալ-կուլտուրական ծախսերի ընդհանուր գումարից լուսավորության ծախսերը կկազմեն 60,8 միլիարդ ռուբլի, առողջապահության ծախսերը՝ 21,6 միլիարդ ռուբլի, սոցիալական ապահովության ծախսերը՝ 21,4 միլիարդ ռուբլի, բազմազավակ և միայնակ մայրերին տրվելիք նպաստները՝ 3,4 միլիարդ ռուբլի։ Լուսավորության վրա կատարվելիք ծախսերը ապահովում են ընդհանուր յոթնամյա ուսուցման անցկացումը և միջնակարգ կրթության հետագա ընդարձակումը 1949 թվին։ Տարրական, յոթնամյա և միջնակարգ դպրոցներում սովորողների ընդհանուր թիվը հասնում է 33,9 միլիոն մարդու, իսկ բարձրագույն ուսումնական հաստատությունների, տեխնիկումների և այլ միջնակարգ մասնագիտական

արտադրական ուսումնական հաստատու-թյունների ուսանողների թիվը կկազմի մոտ մեկ միլիոն 900 հազար մարդ։

Պետական մեծ միջոցներ են հատկացվում գյուղատնտեսության հետագա վերելքին։ Գյուղատնտեսությունը ֆինանսավորելու համար, բյուջեից կատարվելիք ծախսերը 1948 թվի 29,5 միլիարդ ռուբլուց 1949 թվին հասցվում է 32,7 միլիարդ ռուբլու։ Բյու-ջետային միջոցների հիմնական բաժինը հատկացվում է գյուղատնտեսության մեքե-նայացման զարգացմանը, այն միջոցների ֆինանսավորմանը, որոնք կապված են դաշտապաշտպան անտառաշերտերի պլանը կիրառելու, խոտադաշտային ցանքաշրջա-նառությունն արմատավորելու, լճակներ և ջրամբարներ կառուցելու հետ։

1949 թվի պետական բյուջեում նախա-տեսված է մեր հայրենիքի Զինված Ուժերի պահպանման վրա ծախսել 79,1 միլիարդ ռուբլի, կամ բյուջեի ծախսերի 19 տոկոսը։ Անցյալ տարվա համեմատությամբ, ռազմա-կան ծախսերի որոշ ավելացումը կապված է մեծածախ գների և երկաթուղային դրույք-ների բարձրացման հետ։

Վարելով նոր համաշխարհային պատե-րազմի նախապատրաստման քաղաքակա-



նությունն իմպերիալիստները տարեց տարի ավելացնում են ռազմական ծախսերը։ ԱՄՆ-ի բյուջեյում ռազմական ծախսերը համեմատած 1938—39 թվերի հետ 1948—49 թվերին աճել են համարյա 15 անգամ։ 1949—50 թ. թ. ռազմական ծախսերը կազ-մում են ամբողջ բյուջեի 38 տոկոսը, իսկ եթե սրանց ավելացնենք ռազմական նպա-տակներով կատարվող մյուս հատկացում-ները, ԱՄՆ-ի ռազմական ծախսերը 1949—50 թ. թ. կկազմեն երկրի բյուջեի կեսից ա-վելին։ Անգլիայի ռազմական ծախսերը 1948—49 թ. թ. համեմատած 1938—39 թ.թ. հետ ավելացել է համարյա երեք անգամ։ Այս փաստերը ակնառու կերպով ցույց են տալիս անգլո-ամերիկյան ղեկավար շըր-ջանների ագրեսիվ քաղաքականությունը։

ՍՍՌՄ Պետական բյուջեն վառ արտացո-լում է սովետական կառավարության վարած լենինյան-ստալինյան ազգային քաղաքա-կանության։ Այս տարվա բյուջեն նորանոր հնարավորություններ է ստեղծում Սովետա-կան Միության բոլոր ռեսպուբլիկաների ժո-ղովրդական տնտեսության ու կուլտուրայի նոր վերելքի համար։ Միութենական ռես-պուբլիկաների բյուջեները 1948 թվի 85,4 միլիարդ ռուբլուց 1949 թվին հասել է 92,4

միլիարդ ռուբլու, որի հիմնական մասը հատկացվում է ժողովրդական տնտեսության ֆինանսավորման, ժողովրդական լուսավորությանն ու առողջապահությանը։ Այդ միջոցների ճնշող մասը՝ 62,6 միլիարդ ռուբլի հատկացվում է սոցիալ-կուլտուրական կարիքներին։ Դրա լավագույն ապացույցներից մեկը մեր ռեսպուբլիկայի բյուջեն է։ Հայկական ՍՍՌ 1949 թվի պետական բյուջեն կազմում է մեկ միլիարդ 103 միլիոն ռուբլի։ Ռեսպուբլիկայի ժողովրդական տնտեսության ֆինանսավորումը 1949 թվին 1948 թ. համեմատությամբ աճել է 10,4 տոկոսով։ Այդ միջոցների զգալի մասը հատկացվում է արդյունաբերության զարգացմանը, որի ֆինանսավորումը անցյալ տարվա համեմատությամբ ավելանում է 30 տոկոսով։ Այս տարվա բյուջետային հատկացումները ամբողջովին ապահովում են նոր հնգամյակի չորրորդ տարվա ռեսպուբլիկայի ժողովրդական տնտեսության պլանով նախատեսված տնտեսական ու կուլտուրական միջոցառումների ֆինանսավորումը։

Լուսավորության ծախսերն այս տարի կկազմեն 491,4 միլիոն ռուբլի, 1948 թվի համեմատությամբ կավելանա 11,4 միլիոն



ռուբլով։ 1949 թվի վերջում 1186 տարրական և միջնակարգ դպրոցներում կսովորեն 303 հազար դպրոցականներ՝ ներկայումս սովորող 286,8 հազարի դիմաց։ Բոլոր պայմաններն ստեղծվում են ռեսպուբլիկայի գյուղերում ևս յոթնամյա պարտադիր կրթությունն իրագործելու համար։

Առողջապահության և գիտական հիմնարկությունների հետագա զարգացման համար նախատեսվում է 58 միլիոն ռուբլի։ Զգալի ներդրումներ է կատարվում գյուղատնտեսության հետագա զարգացման համար։

Սոցիալիզմի երկրի 1949 թվի պետական բյուջեն միահամուռ հավանություն գտավ ու հաստատվեց ՍՍՌՄ Գերագույն Սովետի կողմից։ Սովետական մարդիկ բուռն խանդավառությամբ և անհուն սիրով ընդունեցին մեր բազմազգ ժողովուրդների ընտրյալների՝ սովետական իշխանության գերագույն մարմնի այդ նշանավոր որոշումը։ Մեր անծայրածիր հայրենիքի եղբայրական ժողովուրդները, նրանց հետ միասին Հայաստանի աշխատավորությունը, գործի դնելով իրենց ողջ ուժերը, Լենինի-Ստալինի պարտիայի, Մեծ Ստալինի ղեկավարությամբ կպայքարեն հաջողությամբ կենսագործելու ՍՍՌՄ պետական բյուջեն։

# Ի՞ՆՉ Է ՆՇԱՆԱԿՈՒՄ ՇՐՋԱՆԱՌՈՒ ՄԻՋՈՑՆԵՐԻ ՇՐՋԱՆԱՌՈՒԹՅԱՆ ԱՐԱԳԱՑՈՒՄԸ

*Ստալինյան հնգամյակի վիթխարի խնդիրների հաջող կատարումը պահանջում է նոր ռեսուրսների մոբիլիզացում, սոցիալիստական կուտակումների ավելացում, բոլոր արդյունաբերական ձեռնարկությունների և ժողովրդական տնտեսության ճյուղերի շահաբերության բարձրացում, խնայողության ռեժիմի խստիվ պահպանում: Արտադրության տեմպը բարձրացնելու գործում կարևոր դեր է խաղում շրջանառու միջոցների շրջանառության արագացումը, այլ կերպ ասած՝ շրջանառու միջոցների մեկ ռուբլում ընկնող արտադրանքի քանակի ավելացումը:*

*Արտադրության շրջանառու միջոցների շրջանառության արագացման նախաձեռնողները հանդիսացան Մոսկվայի արդյունաբերական ձեռնարկությունները: Ընկեր Ստալինին ուղղված նամակում նրանք պարտա-*



*վորություն վերցրին շրջանառու միջոցների շրջանառության արագացման հնգամյա պլանը կատարել երեք և կես տարում, 1949 թվին ժողովրդական տնտեսության համար ազատել մեկ միլիարդ 300 միլիոն ռուբլի:*

*Մոսկվացիների այդ հայրենասիրական նախաձեռնությունը մեծ արձագանք գտավ Սովետական Միության աշխատավորության կողմից: Վերանայելով իրենց մոտ եղած հնարավորությունները, մեր երկրի հարյուրավոր և հազարավոր արդյունաբերական ձեռնարկությունների աշխատողներ պարտավորություններ են վերցնում արագացնել շրջանառու միջոցների շրջանառությունը և այդպիսով պետության համար ազատել նորանոր միջոցներ:*

*Իսկ ի՞նչ են իրենցից ներկայացնում շրջանառու միջոցները:*

*Սովետական պետությունն ամեն մի ձեռնարկության համար առանձնացնում է որոշակի քանակությամբ շրջանառու միջոցներ՝ դրամական և ապրանքա-նյութական արժեքներ, որոնք անհրաժեշտ են արտադրական նորմալ պրոցեսը կազմակերպելու և պետական պլանները կատարելու համար: Ուրիշ խոսքով՝ շրջանառու միջոցները գործարանում, ֆաբրիկայում, կամ արտադրական այլ*

ձեռնարկությունում գտնվող հումքը և օժանդակ նյութերն են, ինչպես նաև արտադրական պրոցեսներում գտնվող կիսաֆաբրիկատները և պատրաստի արտադրանքը: Արագացնել շրջանառու միջոցների շրջանառությունը նշանակում է թույլ չտալ այդ ապրանքների ու նյութական միջոցների անշարժություն, այսինքն որքան հնարավոր է արագ կերպով հումքը և օժանդակ նյութերը դարձնել պատրաստի արտադրանք, իսկ արդեն պատրաստի արտադրանքը չկուտակել պահեստներում, այլ այն արագ կերպով հասցնել սպառողին:

Պետության կողմից ձեռնարկություններին տրված շրջանառու միջոցները առհասարակ անցնում են իրար հաջորդող երեք ցիկլեր, ստադիաներ: Առաջին ստադիան այն է, երբ այդ շրջանառու միջոցների մի մասը ծախսվում է արտադրության համար անհրաժեշտ հումք, վառելանյութ ձեռք բերելու համար:

Երկրորդ ստադիայում շրջանառու միջոցների մի մասը ծախսվում է ձեռք բերած հումքը, նյութերը արտադրանքի վերածելու համար: Այստեղ շրջանառու միջոցները հանդես են գալիս որպես կիսաֆաբրիկատներ, այսինքն դրանք տվյալ գործարանի, ֆաբրիկայի ցեխերում գտնվող ոչ պատ-



րաստի դետալներն են, կամ կիսաֆաբրիկատները:

Շրջանառու միջոցների երրորդ ստադիան, ցիկլը սկսվում է այդ ոչ ավարտված դետալների, կիսաֆաբրիկատների՝ պատրաստի արտադրանքի վերածումով և ավարտվում է այդ պատրաստի արտադրանքի ռեալիզացիայով:

Շրջանառու միջոցների շրջանառության արագացումը արտադրական ձեռնարկությունների աշխատողներից պահանջում է ավելի կատարելագործել արտադրական պրոցեսները, ավելի արդյունավետ օգտագործել մեքենաներն ու սարքավորումները, խնայողաբար, առանց փչացումների ծախսել հումքը, բարձրացնել արտադրանքի որակը, միջոցներ ձեռք առնել արագ կերպով ռեալիզացիայի ենթարկելու պատրաստի արտադրանքը:

Իսկ թե ինչ է նշանակում շրջանառու միջոցների արագություն, այդ կարելի է ցույց տալ հետևյալ օրինակով:

Վերցնենք երկու միևնույն պայմաններում աշխատող, հավասար կարողության գործարաններ, որոնցից յուրաքանչյուրի շրջանառու միջոցները կազմում են մեկ միլիոն ռուբլի: Ասենք դրանցից առաջին գործարանը մեկ

ռուբլու դիմաց տարեկան տալիս է 4 ռուբլու արտադրանք, իսկ երկրորդը՝ 5 ռուբլու։ Եթե տարվա օրերի թիվը (360) բաժանենք մեկ ռուբլու դիմաց ստացված արտադրանքի վրա, կստանանք շրջանառու միջոցների շրջանառության տևողությունը։ Մեր օրինակի մեջ առաջին գործարանում այն կկազմի 90 օր, իսկ երկրորդ գործարանում՝ 72 օր, այսինքն առաջին գործարանը վատ է աշխատում երկրորդից։ Եթե առաջին գործարանն էլ կարողանար արագացնել շրջանառու միջոցների շրջանառության տևողությունը և հասներ երկրորդ գործարանին, ապա նա, իր պլանները կատարելով հանդերձ, մեկ տարում շրջանառու միջոցներից կազատեր 200 հազար ռուբլի և այն կդներ պետության տրամադրության տակ։

Թե տնտեսական ինչ խոշոր նշանակություն ունի շրջանառու միջոցների շրջանառության արագացումը, այդ կարելի է ցույց տալ Երևանի Ստալինյան ռայոնի արդյունաբերական ձեռնարկություններից վերցրած մի քանի օրինակներով։

Մոսկվացիների հայրենասիրական օրինակով Երևանի Ստալինյան ռայոնի արդյունաբերական ձեռնարկություններում լայն ծավալ է ստացել շրջանառու միջոցների շրջա-



նառության արագացման համար մղվող պայքարը։ Նախնական հաշիվները ցույց են տալիս, որ ռայոնի արդյունաբերական ձեռնարկությունները, կրճատելով շրջանառու միջոցների շրջանառության տևողությունը, 1949 թվին պետության բյուջեի համար ազատում են 30 միլիոն ռուբլի։

Կիրովի անվան գործարանի կոլեկտիվը պարտավորվել է 1949 թվի ընթացքում ազատել 4,5 միլիոն ռուբլու շրջանառու միջոցներ։ Այս պարտավորությունը ընդունված է ելնելով գործարանի ունեցած, դեռևս չօգտագործված միջոցների ճիշտ հաշվառումից։ Կիրովցիները հաշվել են, որ այդ գումարը կարելի է ազատել արտադրական ցիկլի և արտադրական պրոցեսում գտնվող կիսաֆաբրիկատների քանակի կրճատումով, տեխնոլոգիական պրոցեսի նեղ տեղերի վերացման, արտադրության բոլոր տեղամասերի ռիթմիկ աշխատանքի միջոցով, անավարտ աշխատանքի ծավալը կրճատելով 325 հազար ռուբլով։ Ոչ արտադրական կորուստների կրճատումով, հումքի, օժանդակ նյութերի, էլեկտրաէներգիայի խիստ խնայողության ու սարքավորումների աշխատանքի ժամկետների երկարացման շնորհիվ գործարանը նյութական արժեքների ծախսերը կարող է կրճատել

երեք միլիոն 308 հազար ռուբլով: Վերջապես պատրաստի արտադրանքի իրացման ժամկետի կրճատման ու պահեստներում պատրաստի արտադրանքի քանակի նվազեցումով հնարավոր կլինի ազատել 867 հազար ռուբլի:

Շրջանառու միջոցների շրջանառության արագացման լավ օրինակ է տալիս Ծխախոտի ֆաբրիկան: Աշխատանքի արտադրողականության բարձրացման, ապրանքների ասորտիմենտի լավացման, մեծ աշխատանք պահանջող պրոցեսների մեքենայացման հետևանքով գործարանը 1948 թվին շրջանառու միջոցների ամեն մի ռուբլու դիմաց ունեցավ 18 ռուբլու 51 կոպեկի արտադրանք և շրջանառությունը կազմեց 42 օր, 1940 թվին մեկ ռուբլուն հասնող 6 ռուբլի 12 կոպեկ արտադրանքի և շրջանառության 58 օրվա դիմաց: Մանրազնին կերպով հաշվելով եղած հնարավորությունները գործարանի կոլեկտիվը պարտավորվել է շրջանառության մեջ գտնվող մեկ ռուբլու արդյունքը հասցնել 11 ռուբլի 90 կոպեկի, և շրջանառությունը կրճատել ու հասցնել 30 օրվա: Այսպիսով Ծխախոտի ֆաբրիկայի արտադրության մեջ օգտագործվող շրջանառու միջոցների շրջանառությունը, 1940 թվի համեմատությամբ, 1949 թվին արագացվում է 1,7 անգամ:



Շրջանառու միջոցների շրջանառության արագացման գործին անմիջական մասնակցություն ունի գործարանի կամ ֆաբրիկայի յուրաքանչյուր բանվոր, բանվորուհի, յուրաքանչյուր աշխատող: Եթե հումք մատակարարող բանվորը ժամանակին չմատակարարի այն, ապա շրջանառության ժամկետը կերկարի, եթե արտադրող բանվորը վատորակ արտադրանք տա, ապա այն կմնա պահեստում և շրջանառության մեջ չի մտնի, եթե պատրաստի արտադրանքի պահեստում անկարգություն, թափթփվածություն է տիրում և սպառողը օրերով չի կարողանում վերցնել իրեն անհրաժեշտ ապրանքը, ապա այդ ապրանքը այդքան օրով երկարացնում է շրջանառությունը և այլն: Ուրեմն մեր արդյունաբերական ձեռնարկությունների յուրաքանչյուր աշխատող, ինչ պոստում էլ՝ որ նա գտնվի, պետք է աշխատի այնպես, որ իր պատճառով աշխատանքի ոչ մի խափանում, աշխատանքային պրոցեսի ոչ մի խանգարում, կամ դանդաղում տեղի չունենա: Այսպիսով նա կարագացնի շրջանառու միջոցների շրջանառությունը, կօգնի գործարանին՝ կատարելու պետական առաջադրանքները:

Բ. ԳՐԻԳՈՐՅԱՆ
ՀԿ(բ)Պ Երևանի Ստալինյան
ռայկոմի քարտուղար

# ԱԳԻՏԱՏՈՐՆԵՐԸ ՄԱՍՍԱՅԱԿԱՆԱՑՆՈՒՄ ԵՆ ՄՈՍԿՎԱՑԻՆԵՐԻ ՆԱԽԱՁԵՌՆՈՒԹՅՈՒՆԸ

*Շրջանառու միջոցների շրջանառության արագացման միջոցով երկրին մեկ միլիարդ 300 միլիոն ռուբլու խնայողություն տալու վերաբերյալ Մոսկվայի արդյունաբերական ձեռնարկությունների նախաձեռնությունը մեծ արձագանք գտավ ամբողջ Սովետական Միության մեջ։ Մեր երկրի բազմաթիվ գործարաններում ու ֆաբրիկաներում գնալով ավելի ու ավելի լայն արձագանք է գտնում նաև Մոսկվայի Կրասնոխոլմի կոմբինատի վարպետի օգնական Ալեքսանդր Չուտկիխի նախաձեռնությունը՝ գերազանց որակի արտադրանքի բրիգադներ ստեղծելու վերաբերյալ։*

*Թե ինչպիսի կոնկրետ արդյունքներ կարող է տալ ագիտատորների լավագույն աշխատանքը Մոսկվայի արդյունաբերական ձեռնարկությունների և Ալեքսանդր Չուտկիխի նախաձեռնությունների մասսայականացման գործում, այդ կարելի է ցույց տալ*



*Երևանի Քաղաքային Սովետի Մեխանիկական գործարանի պարտկազմակերպության ագիտատորների աշխատանքի փորձից վերցրած մեկ-երկու օրինակով։*

*Ինչպես հայտնի է, շրջանառու միջոցների շրջանառության արագացման մեջ կարևոր հարցերից մեկը դա հումքի նպատակահարմար և խնայողաբար օգտագործումն է։ Դեռ այս տարվա սկզբին մեր գործարանի կոլեկտիվը որոշեց քաղաքի էլեկտրական լուսավորության սյուների համար գործածվող չուգունի ծախսումը կրճատել 30—40 տոկոսով, միաժամանակ ավելի գեղեցիկ տեսք տալով սյուներին. կոլեկտիվը որոշեց նաև հնարավորին չափ կրճատել գունավոր մետաղների գործածությունը։ Պարտիական կազմակերպությունը հանձնարարեց ագիտատորներին գործարանի կոլեկտիվի այս որոշումը լայնորեն մասսայականացնել ցեխերում, լսել բանվորների առաջարկությունները, օգնել կենսագործելու այդ առաջարկությունները։*

*Արմատուրայի ցեխի ագիտատոր Վ. Հարությունյանը նախորոք խոսեց ջրի ծորակները պատրաստող Արտաշես Քեշյանի հետ և հարցրեց նրան՝ հնարավոր չէ՞ արդյոք ծորակների համար ավելի քիչ գունավոր մետաղ*

գործածել։ Վարպետը պատասխանեց, որ հնարավոր է։ Ագիտատորը քաջալերեց նրան մտածել այդ մասին։ Վարպետ Քեչյանին օգնության հասավ ցեխի վարիչ ընկ. Ս. Գրիգորյանը։ Եվ շատ չանցած ցեխի բանվորների ագիտացիայի ժամին ցեխի վարիչ և վարպետ Քեչյանը հայտարարեցին, որ իրենք առաջարկում են ծորակները պատրաստելու նոր ձև, որով մեծ չափով կխնայվեն գունավոր մետաղները։ Այդ առաջարկությունը ոգևորեց ցեխի բոլոր աշխատողներին։ Եվ իրոք, ընկերներ Գրիգորյանի և Քեչյանի ձևով ծորակները պատրաստելով գործարանն այս տարի մեծ քանակությամբ գունավոր մետաղներ կտնտեսի և կտա 36 հազար ռուբլու խնայողություն։

Ձուլարան ցեխում մետաղի խնայողության մասին բանվորների հետ զրույց կազմակերպեց գործարանի պարտկոմի քարտուղար, ագիտատոր Ա. Սեկոյանը։ Զրույցի ժամանակ նա առաջարկեց բանվորներին՝ հայտնել իրենց կարծիքները։ Սկսվեց մտքերի աշխույժ փոխանակություն, որի ընթացքում պարզվեց, որ իրոք էլեկտրական լուսավորության սյուների քաշը կարելի է զգալի չափով թեթևացնել, խնայել մետաղը։ Ցեխի բանվորներն առաջարկեցին սյուների կառուցվածքի նոր



կոնստրուկցիա։ Գործարանի դիրեկցիան հաստատեց այդ կոնստրուկցիան և հանձնարարեց պատրաստել առաջին օրինակները։ Նոր սյուներն ստացվեցին թեթև, գեղեցիկ և տեղափոխելու համար հարմար։ Հաշվումները ցույց տվին, որ խնայված չուգունից գործարանը այս տարվա ընթացքում կստանա 123 հազար ռուբլու տնտեսում։

Կամ թե վերցնենք մեխ պատրաստող ցեխը։ Այդ ցեխի արտադրանքը հաճախ ցածրորակ էր լինում, չէր բավարարում պատվիրատուների պահանջները, երկար ժամանակ մնում էր պահեստում։ Բոլորին էլ հայտնի էր, որ ցածրորակ արտադրանքի հետևանք էր մեքենավար Գ. Խաչիկյանի անփույթ, անպատասխանատու աշխատանքը։ Երբ գործարանի բանվորները քննության էին առնում Ալեքսանդր Զուտկիխի առաջարկությունը, նրանք կտրուկ կերպով պահանջեցին Խաչիկյանից վերակառուցել իր աշխատանքը և իսպառ վերացնել խոտան արտադրանքը։

Ցեխի ագիտատոր Արծվիկ Սեկոյանը իր հերթական զրույցի հարցը դարձրեց արտադրանքի որակի հարցը։

Դիմելով մեքենավար Խաչիկյանին նա ասաց.

—Ընկեր Խաչիկյան, ի՞նչով բացատրել, որ

մեքենավար ընկեր Գևորգ Կիրակոսյանը, որն աշխատում է նույնպիսի մեքենայի վրա և նույնպիսի պայմաններում, ինչպես և դուք, միշտ էլ բարձրորակ արտադրանք է տալիս։ Պատճառն այն է, որ դուք անուշադիր եք դեպի աշխատանքը, գործի մեջ պատասխանատվություն չեք զգում։ Հույս դնելով ձեր մեքենայի ավտոմատ աշխատանքի վրա, դուք հաճախակի հեռանում եք նրանից։ Բայց չէ՞ որ հենց այդ րոպեներին նա կարող է սկսել վատ աշխատել և վատորակ արտադրանք տալ, իսկ յուրաքանչյուր րոպեին նա արտադրում է մեկ կիլոգրամ մեխ։ Այ, ընկեր Կիրակոսյանը, փականագործ Հակոբ Խաչատրյանի հետ միասին որոշել են կազմել գերազանց արտադրանքի բրիգադա, գործարանի կոլեկտիվը պարծենում է նրանց աշխատանքով։ Իսկ դուք մեր ցեխը միշտ հետ եք քաշում։ Մի՞թե սա վայել է սովետական բանվորին։

Ագիտատորի խոսքերը ազդեցին Խաչիկյանի վրա։ Նա սկսեց անհամեմատ լավ աշխատել։ Այժմ գործարանը տալիս է միայն լավորակ մեխ և պատահական չէ, որ այն արագորեն սպառվում է։

Ս. ՊԵՏՐՈՍՅԱՆ
Երևանի Քաղսովետի Մեխանիկական գործարանի դիրեկտոր

---

## ԱԳԻՏԱՑԻՈՆ ԳՈՐԾԻ ԴՐՎԱԾՔԸ ՓՈՔՐ ՇԱՀՐԻԱՐ ԳՅՈՒՂԻ ԿՈԼԽՈԶՈՒՄ

Ստալինյան նոր հնգամյակի չորրորդ տարվա բոլշևիկյան գարնանացանը կազմ ու պատրաստ դիմավորելու, այն կարճ ժամկետում ու բարձր որակով կատարելու համար կոլխոզնիկների մեջ ագիտացիոն-մասսայական մեծ աշխատանք են ծավալել Հոկտեմբերյանի շրջանի փոքր Շահրիար գյուղի կոլխոզի պարտիական կազմակերպությունը և նրա ագիտկոլեկտիվը։

Հաստատելով ագիտկոլեկտիվի կազմը, պարտկազմակերպությունն այնպես դասավորեց կադրերը, որպեսզի կոլխոզի յուրաքանչյուր օղակ իր ագիտատորն ունենա և ոչ մի կոլխոզնիկ դուրս չմնա ագիտացիայի ցանցից, Ագիտատորներ առաջադրվեցին քաղաքականապես պատրաստված, արտադրության լավագույն աշխատողներ։

Դեռ գարնանացանի նախապատրաստության սկզբնական շրջանում կոլխոզի պարտիական կազմակերպությունը քննության ա-

ռավ և հաստատեց ագիտկոլեկտիվի աշխատանքի պլանը։ Բացի այդ, պարտկազմակերպությունը որոշեց յուրաքանչյուր ամիս երեք անգամ ագիտատորների համար ունենալ սեմինար պարապմունքներ։

Գարնանացանի նախապատրաստության ամբողջ ընթացքում ագիտկոլեկտիվը, որի ղեկավարն է Վ. Գևորգյանը, անշեղորեն կենսագործում է պարտիական կազմակերպության այդ որոշումները։ Ագիտկոլեկտիվի սեմինար խորհրդակցություններում գարնանացանի նախապատրաստության ասպարեզում կոլխոզի ագիտատորների անելիքների մասին զեկուցել է կոլխոզի նախագահ, Հայկական ՍՍՌ Գերագույն Սովետի դեպուտատ ընկ. Յուվարաշ Ավչյանը, կոլխոզում քաղաքական ագիտացիայի և մասսայական աշխատանքների կազմակերպման հարցի շուրջը զեկուցել է ՀԿ(բ)Պ Հոկտեմբերյանի շրջկոմի պրոպագանդայի և ագիտացիայի բաժնի վարիչ ընկ. Ա. Սարգսյանը։ Ագիտատորները մի քանի զեկուցումներ են լսել սովետական առաջավոր ագրոտեխնիկայի կիրառման հարցերի մասին։

Բացի սեմինար խորհրդակցություններից, ագիտկոլեկտիվի ղեկավար Վ. Գևորգյանը շաբաթը մեկ անգամ ագիտկոլեկտիվի ժո-



ղովում մեթոդական ցուցումներ է տալիս ագիտատորներին՝ առաջիկա զրույցի թեմայի և զրույցը անցկացնելու ձևերի մասին։

Այս բոլորից բացի, պարտիական կազմակերպության օգնությամբ կոլխոզի բոլոր ագիտատորներն ստանում են անհրաժեշտ թերթեր և ժուռնալներ, քաղաքական և գեղարվեստական գրականություն, «Ագիտատորի գրադարանը» սերիայով լույս տեսնող բրոշյուրները, ցուցադրական ագիտացիայի զանազան նյութեր։ Կոլխոզային ակումբում ագիտատորների համար մշտապես առանձնացվում է նրանց անցկացնելիք զրույցների վերաբերյալ գրականություն։ Պարտիական կազմակերպության ժողովներում հաճախակի լսվում են առանձին ագիտատորների զեկուցումները իրենց կատարած ագիտացիոն-մասսայական աշխատանքների մասին և ցուցումներ են տրվում նրանց առաջիկա անելիքների վերաբերյալ։

Եվ ահա կոլխոզի պարտիական կազմակերպության կողմից ագիտատորներին ցույց տրվող ամենօրյա, կոնկրետ ղեկավարությունը իր փայլուն արդյունքներն է տալիս. ագիտատորների կազմակերպած զրույցներն անցնում են հետաքրքիր և բովանդակալից, խոսելով գարնանացանի նախա-

պատրաստության ընթացքի մասին, ագիտատորները օգնում են կոլխոզնիկներին ավելի լավ աշխատելու, ոգեշնչում նրանց առաջիկա գարնանացանը լավագույն կերպով կատարելու համար։ Որպես օրինակ կարելի է բերել ագիտատոր Վ. Փարսյանի աշխատանքը։ Վ. Փարսյանը, որը դաշտավարական № 1 բրիգադայի բրիգադիրն է, ագիտատոր է նշանակված իր բրիգադայի բարձր բերքի երիտասարդական օղակում։ ՍՍՌՄ Մինիստրների Սովետի և ՀամԿ(բ)Պ Կենտկոմի «Կոլխոզները, ՄՏ կայանները և սովխոզները գարնանացանին նախապատրաստելու ընթացքի մասին» որոշումը օղակում մասսայականացնելուց հետո ագիտատոր Փարսյանն ասաց.

— Լավագույն աշխատանքի շնորհիվ ձեր օղակը անցյալ տարի ստացավ բարձր բերք-օղակի մշակած 6 հեկտար տարածության յուրաքանչյուր հեկտարից միջինը 88,5 ցենտներ բամբակ։ Դա մեր ռեսպուբլիկայի համար ռեկորդային բերք է։ Այս տարի դուք նույնպես լավ եք նախապատրաստվել գարնանացանին, բայց լավ նախապատրաստվելը դեռ քիչ է, կարևորը դա գարնանացանը կարճ ժամկետում և ագրոտեխնիկական բարձր կանոններով



կատարելն է։ Ի՞նչ եք կարծում, այս տարի կկարողանա՞ք ապահովել այդպիսի ռեկորդային բերք օղակին հանձնված 11 հեկտար տարածության վրա։

Խոսք է վերցնում օղակավարուհի Հոկտեմբերիկ Քոլոզյանը։

— Այո՛,— ասում է նա,— մենք այս տարի կաշխատենք ավելի լավ, քան անցյալ տարի, բամբակի ցանքն ու ամբողջ մշակումը կկատարենք բարձր ագրոկանոնների հիման վրա և նորից ռեկորդային բերք կտանք։ Մենք խոստանում ենք օղակի մշակած հողամասի 6 հեկտար տարածության յուրաքանչյուր հեկտարից ստանալ 88,5 ցենտներ, իսկ 5 հեկտարից՝ 55,5 ցենտներ բամբակ։ Մեր առաջնությունը մենք ոչ ոքի չենք զիջի։

— Իսկ ո՞ւմ հետ եք ցանկանում սոցմրցման մեջ մտնել,— հարցնում է ագիտատորը։

— Կոլխոզի հենց ամենաառաջավոր օղակներից մեկի հետ, 2-րդ բրիգադայի Սաթիկ Հակոբյանի օղակի հետ,—միաբերան հայտարարեցին օղակի անդամները։

Սաթիկ Հակոբյանի օղակը խանդավառությամբ ընդունեց Հոկտեմբերիկ Քոլոզյանի օղակի մրցահրավերը։ Նրա օղակի ագիտատոր, գյուղի դպրոցի ուսմասվար Ս. Մես-

րոբյանը, մանրամասն խորհրդակցելով օղակավարուհու հետ, իր հերթական զրույցը նվիրեց սոցիալիստական մրցության հրավերն ընդունելու հարցին։ Խոսելով Քոլոզյանի օղակի նվաճումների մասին ագիտատորն ասաց.

— Ճիշտ է, Հոկտեմբերիկի օղակը անցյալ տարի ռեկորդային բերք ստացավ և այս տարի էլ շատ բարձր պարտավորություններ է վերցրել, բայց այդ չի նշանակում, որ նրա օղակի հետ դժվար է մրցել։

— Իսկ մենք բոլորովին էլ չենք վախենում նրանց հետ մրցելուց, ընկեր Մեսրոբյան։ Մենք ընդունում ենք մրցահրավերը. եկե՛ք պայմանագիր կնքենք,— ասաց օղակավարուհի Սաթիկ Հակոբյանը։

Եվ կոլխոզնիկների մեջ բորբոքելով մրցության կրակը, ագիտատորներ Փարսյանը և Մեսրոբյանը օգնեցին նրանց կնքել սոցիալիստական մրցության պայմանագիրը։ Մրցելով իրար հետ օղակավարուհիներ Հ. Քոլոզյանը և Ս. Հակոբյանը, փոխանակելով իրենց ունեցած աշխատանքային փորձը, օգնում են միմյանց՝ վերցրած պարտավորությունները պատվով կատարելու համար։

Ն. ՍԱՀԱԿՅԱՆ

ԳՅՈՒՂԱՏՆՏԵՍՈՒ ԶՐՈՒՅՑԸ

# ՄԵՐ ՌԵՍՊՈՒԲԼԻԿԱՅԻ ԴԱՇՏԱՊԱՇՏՊԱՆ ԱՆՏԱՌԱՇԵՐՏԵՐԸ

Երաշտը գյուղատնտեսության ամենամեծագույն չարիքն է. Նա առաջ է գալիս տաք, չոր քամիների հաճախականությունից, հողը ոչ ճիշտ ագրոտեխնիկայով մշակելու պայմաններում։ Անտառազուրկ վայրերում հումուսով աղքատ, ավազոտ հողերում երաշտաբեր քամիների ներգործությունը այն աստիճանի կործանաբեր է գյուղատնտեսական կուլտուրաների համար, որ մարդիկ բարվոք են համարում չմշակել այդպիսի հողերը։ Երաշտի դեմ պայքարի ամենալավագույն միջոցը մշակել են ռուս գիտնականներ Դոկուչաևը, Կոստիչևը, սովետական ժամանակի խոշորագույն գիտնական Վ. Ռ. Վիլյամսը։ Դա, այսպես կոչված՝ երկրագործության խոտադաշտային սիստեմն է, որի տարրերից մեկը անտառաշերտերով դաշտերը պաշտպանելն է։

Հայաստանի շատ շրջաններում, որտեղ շր-

կան անտառներ, երաշտաբեր տաք և չոր քամիները հաճախակի մեծ վնասներ են հասցնում գյուղատնտեսությանը։ Այդ քամիները մեզ մոտ գալիս են Իրանի անապատներից։ Վաղ գարնանը նրանք առաջ են բերում արագ ձնհալ, որի ջրերը ողողում են հողերը։ Գարնան աշխատանքների ժամանակ այդ քամիները արագ կերպով չորացնում են հողը։ Սերմերը մնում են չոր հողի մեջ, չեն ծլում, մինչև անձրևների գալը։

Հացաբույսերի կաթնային և մոմային հասունացման շրջանում հարավային տաք և չոր քամիները կործանիչ ազդեցություն են ունենում բերքի վրա։ Մեկ—երկու օրվա ընթացքում չորանում են բույսերի հասկերը, մնում են բոլորովին դատարկ, կամ ունենում են նվազ, չմշակված հատիկներ։ Այդ երևույթին մեզ մոտ ասում են «քամին քաշեց», կամ «տոթը տարավ»։

Չոր քամիներից տուժում են ոչ միայն հացահատիկները, այլև բամբակը, ծխախոտը, այգիները, մի խոսքով գյուղատնտեսական բոլոր կուլտուրաները, լինեն նրանք ջրովի, թե անջրդի դաշտում, միևնույն է։ Խորշակները ավելի արագ և մեծ չափով են բույսերից ջուր գոլորշիացնում, քան նրանք ընդունակ են իրենց արմատներով ջուրը վերցնելու։



Այդ պատճառով էլ խորշակներից տուժում են անգամ չալթուկի ցանքերը։

Սովետական ամբողջ ժողովուրդը, ընկեր Ստալինի նախագծումներով հարձակման է անցել երաշտի, բնության այդ չարիքի դեմ։ Հարձակման այդ պլանը, որն արտահայտվում է ՍՍՌՄ Մինիստրների Սովետի և Համ. Կ(բ)Պ Կենտկոմի 1948 թվի հոկտեմբերի որոշմամբ, նախատեսում է մինչև 1965 թիվը ՍՍՌՄ եվրոպական մասի տափաստանային և անտառատափաստանային շրջաններում տնկելու դաշտապաշտպան անտառաշերտեր՝ 5 միլիոն 709 հազար հեկտար տարածությամբ, կառուցել լճեր, լճակներ, ջրամբարներ՝ ձյան ջրերը կուտակելու ոռոգման նպատակով օգտագործելու համար, կիրառել խոտադաշտային, դաշտային և կերային ցանքաշրջանառություն։

Հայկական ՍՍՌ Մինիստրների Սովետի 1948 թվի դեկտեմբերի 5-ի որոշմամբ, մեր կոլխոզային դաշտերում մոտակա չորս տարվա ընթացքում միայն կոլխոզների միջոցով պետք է տնկվեն 10 հազար 700 հեկտար դաշտապաշտպան անտառաշերտեր։ Բացի այդ, կոլխոզային դաշտերում Հայկական ՍՍՌ Անտառտնտեսության մինիստրության միջոցով 1949 թվի ընթացքում պետք է տըն-

կրվի 1500 հեկտար անտառաշերտ: Հայկա-կան ՍՍՌ Անտառային տնտեսության մինիստրության միջոցով դաշտապաշտպան անտառաշերտեր ստեղծվելու են երեք շերտով. յուրաքանչյուր շերտի լայնությունը պետք է լինի 50 մետր, շերտերի միջև եղած տարածությունը՝ 200—300 մետր: Պետական անտառաշերտերի ընդհանուր երկարությունը կազմելու է 112 կիլոմետր: Այդ անտառաշերտերը դասավորվելու են հետևյալ կերպ.

Վեդու շրջանում— սկսած Արաքս գետից մինչև Արարատ գյուղը՝ 6 կիլոմետր երկարությամբ.

Արտաշատի և Վեդու շրջանային սահմանում, սկսած Արաքս գետից Ջաթմասու կոչված ջրի ափով մինչև Ստալինյան ջրանցքը՝ 11 կիլոմետր երկարությամբ.

Աշտարակի շրջանում— սկսած Մուղնի գյուղից դեպի հարավ-արևմուտք Ոսկեվազ, Աղավնատուն, Խզնավուզ գյուղերի վրայով մինչև Այղր լիճը, Դեպի Արաքս կայարանը Սարդարաբադի ջրանցքի երկարությամբ՝ ընդամենը 30 կիլոմետր:

Թալինի շրջանում— սկսած Կրմզլու գյուղից Իրինդ գյուղի հարավով դեպի արևմուտք մինչև Վերին Թալին գյուղը՝ 10 կիլոմետր.
Մարտունու շրջանում— սկսած Երանոս գյու-



ղից, լճի ափից 6—8 կիլոմետր բարձր Ծակքար, Ն. Ադիաման, Մարտունի, Վաղաշեն, Ջոլաքար գյուղերի վրայով՝ 20 կիլոմետր երկարությամբ.

Ախուրյանի շրջանում— սկսած Հովունի գյուղից դեպի հարավ, մինչև Աղասյան գյուղը՝ 20 կիլոմետր երկարությամբ.

Ախտայի շրջանում՝ սկսած Բջնի գյուղից դեպի Ֆանտան և Ֆանտանի վրայով մինչև Գութնի սարը (Քոթանդաղ) 15 կիլոմետր երկարությամբ:

Հայաստանի աշխատավորությունը մեծ խանդավառությամբ լծվել է այդ սքանչելի պլանի իրագործմանը: Դաշտապաշտպան անտառաշերտերն անհրաժեշտ են բոլոր կոլխոզներում և բոլոր դաշտերում:

Դաշտապաշտպան անտառաշերտերը պետք է տարվեն տվյալ կոլխոզում, տվյալ դաշտում մուտք գործող խորոշակների ուղղությանը ուղղահայաց: Այդ ուղղահայաց շերտերը կոչվում են **հիմնական շերտեր**: Բացի հիմնական շերտից տարվում են օժանդակ շերտեր, որոնք լինում են հիմնական շերտին ուղղահայաց: Օժանդակ շերտերը իրարից պետք է լինեն 1000—1500 մետր հեռավորության վրա: Որքան ուժեղ է խորշակների ազդեցությունը տվյալ դաշտում և

որքան ցածր հասակ են ունենալու դաշտապաշտպան անտառաշերտերում տնկված ծառերը, այնքան պետք է հիմնական շերտերը մեկը-մյուսին մոտիկ լինեն։ Հիմնական շերտերի հեռավորությունը մեկը մյուսից պայմանավորվում է անտառաշերտերի ծառերի բարձրության քանակապատիկ չափով— եթե ծառերը շերտում ունեն 10 մետր բարձրություն, ապա նրանք խորշակներից կարող են պաշտպանել 200 մետր տարածություն։

Դաշտապաշտպան անտառաշերտը, նայած վայրին, տնկվող ծառատեսակների աճման փարթամությանը, կարող են լինել 5—7 ծառաշարքերով։ Շարքերի հեռավորությունը մեկը մյուսից պետք է լինի 1,5 մետր, եթե շարամեջ տարածությունը մշակվելու է ձեռքով և ձիաքարշ կուլտիվատորներով, իսկ տրակտորային մշակության դեպքում՝ 2,3 մետր։ Բույսը բույսից պետք է տնկել 0,6, 0,8 և 1 մետր հեռավորության վրա։ Անտառաշերտում պետք է տնկել 1—2 տարեկան բուսակներ. ջրովի, խոնավությամբ ապահովված հողերում կարելի է տնկել կտրոններ։ Վաղ գարնանը կարելի է ցանել բնացանի ձևով կաղնու, ընկույզի, գլեդիչյայի, ակացիայի սերմեր։

Դաշտապաշտպան անտառաշերտերի



տնկման համար հողը պետք է նախապատրաստել սև ցելի սիստեմով։ Դա բացառիկ անհրաժեշտ է անջրդի չորային շրջաններում (Կոտայք, Միկոյան, Աշտարակ, Թալին, Աղին և այլն)։ Անտառաշերտերի գարնան տնկման համար հողի վարը պետք է կատարել աշնանը, նախախոփիկավոր գութաններով 25—30 սմ. խորությամբ։ Չպետք է թույլ տալ անտառաշերտերում բուսակները, կամ կտրոնները տնկելու յուրաքանչյուր տնկու համար առանձին փորած փոսերում, առանց հողը համատարած և խորը վարելու, թեկուզ ջրովի և ամենալավագույն հողում։ Որպես կանոն, դաշտապաշտպան անտառաշերտերը ստեղծվում են 4—6 արժեքավոր ծառատեսակներից։

Չորացնող քամիների դեմ 8—15 մետր լայնությամբ, մեկը մյուսից 200-600 մ. հեռավորությամբ դասավորված անտառաշերտերը հզոր միջոց են դաշտերը խորշակների վնասից պաշտպանելու համար։ Ձմռան ընթացքում տեղացող ձյունը, շնորհիվ դաշտապաշտպան անտառաշերտերի, հավասարաչափ է նստում դաշտի վրա, տեղի չի ունենում ձյան կուտակում դաշտի ավելի ցածրադիր մասերում, ձորակներում, խանդակնե-

րում։ Դաշտը հավասարաչափ ծածկված լինելով ձյունով, պաշտպանված լինելով քամիներից, խորը շերտով չի սառում և չեն ցրտահարվում աշնանացան բույսերը։ Ձմռան և ամբողջ տարվա ընթացքում քիչ է քայքայվում հողի ստրուկտուրան։ Վաղ գարնանը կոտրելով փչող քամիների ուժը, անտառաշերտերը դանդաղեցնում են ձյան հալումը, կանխում են հեղեղների հնարավոր գոյացումը։

Անտառաշերտերը հողի ստորին շերտերից վերցրած ջուրը գոլորշիացնելով, խոնավեցնում են օդը։ Խոնավ օդի պայմաններում նըվազում է հողից և բույսերից ջրի գոլորշիացումը։ Դաշտապաշտպան անտառաշերտերի բազմակողմանի բարերար ազդեցության հետևանքով գյուղատնտեսական կուլտուրաներից ստացվում է կայուն և բարձր բերք։

Մեր անտառազուրկ շրջաններում անտառաշերտերը կունենան ոչ միայն բնությունը, այլև մարդկանց կենցաղը հեղաշրջող խոշոր նշանակություն և միաժամանակ պտղաբուծության խոշոր բազա կարող են հանդիսանալ։ Այս տարի մեր կոլխոզային դաշտերում կոլխոզների և պետության միջոցներով տընկվելու են 1700 հեկտար դաշտապաշտպան անտառաշերտեր։

# ՍԽԵՄԱ
# ՀԱՅԿԱԿԱՆ ՍՍՌ ԴԱՇՏԱՊԱՇՏՊԱՆ ԱՆՏԱՌԱՇԵՐՏԵՐԻ ՏԵՂԱԴՐՈՒԹՅԱՆ



Բացի դաշտապաշտպան անտառաշերտերի տնկումից, մեր կոլխոզներում 1949 թվի ընթացքում պետք է կազմակերպվի 700 հեկտար անտառային տնկարաններ։ Տնկարանի համար պետք է ընտրել հյուսիսային թեքություն ունեցող, ստորերկրյա ջրերից ազատ, մոլախոտերից մաքուր, հարթ, լավագույն հողեր։ Տնկարանի, դաշտապաշտպան անտառաշերտերի խնամքը պետք է հանձնել հատուկ օղակի։ Դաշտապաշտպան անտառաշերտերում և տնկարաններում աճեցնելու համար այժմվանից պետք է մթերել կտրոնները։ 1950 թվին մեր կոլխոզների միջոցով, պետք է տնկվի 2500 հեկտար դաշտապաշտպան անտառաշերտ։ Մեկ հեկտար անտառաշերտի տնկման համար անհրաժեշտ է միջին հաշվով 8000 տնկի. այդ հաշվով այժմյանից պետք է տնկարաններում սերմերով և կտրոններով աճեցնել տնկիներ, նկատի ունենալով 1950 և 1951 թվերի տնկումները տնկանյութով ապահովելը։ Պետք է նկատի ունենալ, որ գալիք տարիների աշխատանքի հաջողությունը կախված է տնկարանի այս տարվա հաջող կազմակերպումից։

Գյուղատնտես Ա. ՀՈՎԱԿԻՄՅԱՆ

## ԹԵՄԱՆԵՐ, ՊԼԱՆՆԵՐ ԵՎ ԳՐԱԿԱՆՈՒԹՅՈՒՆ ԱԳԻՏԱՏՈՐՆԵՐԻ ԶՐՈՒՅՑՆԵՐԻ ՀԱՄԱՐ

### I

### ՍՈՎԵՏԱԿԱՆ ԺՈՂՈՎՐԴԻ ՆԿԱՏՄԱՄԲ ՍՏԱԼԻՆՅԱՆ ՀՈԳԱՏԱՐՈՒԹՅԱՆ ՆՈՐ ԱՐՏԱՀԱՅՏՈՒԹՅՈՒՆ

*1. ՍՍՌՄ Մինիստրների Սովետի և Համ. Կ(բ)Պ Կենտկոմի որոշումը 1949 թվի մարտի 1-ից մասսայական սպառման ապրանքների պետական մանրածախ գների նոր իջեցման մասին— ժողովրդի բարեկեցության համար ցուցաբերած ստալինյան հոգատարության վառ արտահայտություն է։*

*2. Ստալինյան հնգամյակի կատարման և գերակատարման համար աշխատավորության անձնվեր պայքարի հետևանքով ժողովրդական տնտեսության վերելքը— գների իջեցման կարևորագույն պայման է։*

*3. Մասսայական սպառման ապրանքների գների նոր իջեցման երկրորդ էտապը և այդ միջոցառման նշանակությունը ազգաբնակչության և պետության համար։*

*4. Ի պատասխան սովետական մարդկանց նկատմամբ ցուցաբերված ստալինյան հոգատարության ավելի մեծ եռանդով կաշխատենք սիրելի Հայրենիքի բարօրության համար։*



ԳՐԱԿԱՆՈՒԹՅՈՒՆ

Ի. Վ. ՍՏԱԼԻՆ.— Ճառ՝ արտասանած Մոսկվա քաղաքի Ստալինյան ընտրական օկրուգի ընտրողների նախընտրական ժողովում 1946 թվի փետրվարի 9-ին։ *Հայպետհրատ, 1946 թ.։*

ՍՍՌՄ Մինիստրների Սովետի և ՀամԿ(բ)Պ Կենտկոմի որոշումը. 1949 թվի մարտի 1-ից մասսայական սպառման ապրանքների պետական մանրածախ գների նոր իջեցման մասին։ *«Սովետական Հայաստան», մարտի 1, 1949 թ.։ «Ագիտատորի բլոկնոտ» № 5, 1949 թ.։*

ՍՍՌՄ Մինիստրների Սովետի և ՀամԿ(բ)Պ Կենտկոմի որոշումը։ Դրամական ռեֆորմ անցկացնելու և պարենային ու արդյունաբերական ապրանքների քարտերը վերացնելու մասին։ *«Ս. Հ.», 15 դեկտ. 1947 թ.։*

### II

### ՇՐՋԱՆԱՌՈՒ ՄԻՋՈՑՆԵՐԻ ՇՐՋԱՆԱՌՈՒԹՅԱՆ ԱՐԱԳԱՑՈՒՄԸ ԱՐԴՅՈՒՆԱԲԵՐՈՒԹՅԱՆ ԱՇԽԱՏՈՂՆԵՐԻ ԿԱՐԵՎՈՐԱԳՈՒՅՆ ԽՆԴԻՐՆ Է

*1. Մոսկվացիների աշխատանքային հաջողությունները հետպատերազմյան ստալինյան հնգամյակի երրորդ տարում։*

2. Շրջանառու միջոցների շրջանառության արագացման շնորհիվ երկրին մեկ միլիարդ 300 միլիոն ռուբլու տնտեսում տալու վերաբերյալ Մոսկվայի արդյունաբերական ձեռնարկությունների նախաձեռնության քաղաքական և տնտեսական նշանակությունը։

3. Արտադրական ցիկլի կրճատումը շրջանառու միջոցների շրջանառության արագացման կարևորագույն լծակն է։

4. Բարձր արտադրողականության տեխնոլոգիական պրոցեսների ներդրումը, անընդհատ հոսանքի և կոնվեյերների գործադրումը, մեծ աշխատանք պահանջող աշխատանքների հետագա մեքենայացումը արտադրության ցիկլի կրճատման անհրաժեշտ պայմաններն են։

5. Հում նյութի, էլեկտրաէներգիայի, վառելիքի խնայողության համար մղվող պայքարը, պահեստային տնտեսության կարգավորումը— միջոցառումներ են, որոնք օժանդակում են շրջանառու միջոցների շրջանառության արագացմանը։

6. Ինչպես է մեր ձեռնարկության կոլեկտիվը պայքարում շրջանառու միջոցների շրջանառության արագացման համար։

ԳՐԱԿԱՆՈՒԹՅՈՒՆ

Մոսկվացիների նոր նշանալի նախաձեռնությունը:



«Պրավդայի» առաջնորդող հոդ., («Ս. Հ.», 28 հունվարի, 1949 թ.)։

ՍՍՌ Միության Մինիստրների Սովետի Նախագահ ընկեր Ի. Վ. Ստալինին: (Մոսկվայի 103 գործարանների ու ֆաբրիկաների ստանձնած պարտավորությունների՝ շրջանառու միջոցների շրջանառության արագացման միջոցով պետությանը 1949 թվին 400 միլիոն ռուբլի խնայողություն տալու մասին): «Ս. Հ.» 28 հունվ. 1949 թ.։

Մոսկվայի և Մոսկվայի մարզի արդյունաբերության աշխատողների կողմից ՍՍՌ Միության Մինիստրների Սովետի Նախագահ ընկեր Ի. Վ. Ստալինին ուղղած նամակը: «Ս. Հ.» 11 մարտի 1949 թ.։

Ա. ԱՎԱԳՅԱՆ.— Ավելի շատ արտադրանք շրջանառու միջոցների մեկ ռուբլու դիմաց: «Ս. Հ.» 3 փետրվարի 1949 թ.։

III

ԱՐՁԱԳԱՆՔԵՆՔ ԱԼԵՔՍԱՆԴՐ ՉՈՒՏԿԻԽԻ ՆԱԽԱՁԵՌՆՈՒԹՅԱՆԸ

1. Մոսկվայի Կրասնոխոլմսկի կոմբինատի վարպետի օգնական Ալեքսանդր Չուտկիխի ամբողջ բրիգադայով գերազանց որակի արտադրանք տալու վերաբերյալ հայրենասիրական նախաձեռնությունը։

2. Գերազանց որակի բրիգադայի կոչման համար սոցիալիստական մրցության լայն ծավալումը, որակի պատասխանատվության դպրոց-

*ների ստեղծումը— Ալեքսանդր Չուտկիխի
նախաձեռնության մասսայականացման կա-
րևորագույն միջոցառում է։*

*3. Բոլոր դազգահների տեխնիկական
ստուգումը, գործիքների ճշտումը, կահավոր-
ման պրոֆիլակտիկ վերանորոգման գրաֆի-
կի ճշգրիտ պահպանումը, բաց թողնվող
ապրանքների որակի հաշվառման սահմա-
նումը, բանվորների որակավորման բարձրա-
ցումը՝ արտադրանքի որակի լավացման կար-
ևոր նախապայմաններ են։*

*4. Ինչպես է մեր ձեռնարկության մեջ ծա-
վալվում սոցիալիստական մրցությունը գե-
րազանց որակի բրիգադայի կոչման համար։*

ԳՐԱԿԱՆՈՒԹՅՈՒՆ

Արտադրանքի գերազանց որակի համար.— *«Ս. Հ.» 1949 թ. փետրվարի 17-ի համարի առաջնորդողը։*

Երևանի Կոշիկի № 1 ֆաբրիկայի աշխատողները հետևում են ստախանովական Ալեքսանդր Չուտկիխի օրինակին: *«Ս. Հ.» 15 փետրվարի, 1949 թ., 3-րդ էջ։*

---

# ԻՆՉ ԿԱՐԴԱԼ

## Ի. ՅԱ. ԲԼԻՆՈՎ—«ԱԳԻՏԱՏՈՐԻ ԼԵԶՎԻ ՄԱՍԻՆ», ՀԱՅՊԵՏՀՐԱՏ, 1948 Թ.

*«Ագիտատորի գրադարան»-ի սերիայով լույս տեսած դոցենտ Ի. Յա. Բլինովի բրոշյուրը պարունակում է մի շարք արժեքավոր գործնական խորհուրդներ՝ ագիտատորների խոսքի կուլտուրան բարձրացնելու և հարստացնելու վերաբերյալ։*

*Լեզուն մտածողության գործիք է, միտքն արտահայտելու համար գործիք։ «Լեզուն պետք է սովորել... Ագիտատորի համար լեզուն ամեն ինչ է» (Մ. Ի. Կալինին)։*

*Դրա համար առաջին հերթին անհրաժեշտ է, որ ագիտատորը ուշադիր կերպով ուսումնասիրի Լենինի և Ստալինի ճառերն ու աշխատությունները. նրանցից նա սովորում է տիրապետել խոսքին, կառուցել իր զեկուցումները, զրույցները։ Լենինի և Ստալինի ճառերի և աշխատությունների լրջամիտ ուսումնասիրությունը ագիտատորի լեզվի հարստացման առաջին աղբյուրն է. նրանցից նա կքաղի պարզության, ճշգրտության, հակիրճ արտահայտչության օրինակներ, ո-*

րոնք մարմնավորում են լեզվի ամենազորեղ կողմերը։

Ագիտատորի ելույթը նախ և առաջ պետք է լավ իմաստավորվի, լինի համոզեցուցիչ։ Սակայն, որպեսզի խոսքն ըմբռնելի լինի և համոզեցուցիչ, ագիտատորը պետք է իմանա մայրենի լեզուն և կարողանա գործնականապես կիրառել նրա արտահայտչական միջոցները։ Չտիրապետելով մայրենի լեզվին, նրա բազմազանությունը, չի կարելի սովորել ճիշտ մտածել։ Սոցիալիստական Աշխատանքի Հերոս Յակովլևի հետ ունեցած զրույցի ժամանակ ընկեր Ստալինն ասել է, որ «Եթե մարդը չի կարող գրագետ կերպով, ճիշտ շարադրել իր մտքերը, կնշանակի նա նույնպես անսիստեմ, քաոսային կերպով է մտածում է»։

Ագիտատորի խոսքի կուլտուրայի հարըստացման գործում մեծ նշանակություն ունի ռուսաց լեզուն, նա պետք է տիրապետի Մեծ Հոկտեմբերի, Լենինի-Ստալինի գեղեցիկ և հզոր լեզվին։

Բրոշյուրում մեջ է բերված Մ. Գորկու այն միտքը, որ լեզվի իսկական գեղեցկությունը, որը ներգործում է որպես ուժ, ստեղծվում է բառերի ճշտությամբ, պարզորոշությամբ և հնչեղությամբ։ Ագիտատորը պարտավոր է



լայնորեն ծանոթանալ մայրենի լեզվի հարուստ բառարանի հետ, ստեղծի իր անհատական բառարանը։ Նա պարտավոր է պայքարել լեզվական փնթիության և անկանոնությունների դեմ, որոնք անհամատեղելի են գրական լեզվի և կուլտուրայի հասկացողության հետ։ Բրոշյուրում հեղինակը ցույց է տալիս անհատական բառարանի առավել տիպիկ սխալները, այն է՝ անկուլտուրական ռամկաբանությամբ բառերը, մակաբույծ բառերը, օտար բառերով հափշտակվելը, բառերի սխալ ընտրությունը նախադասություն կազմելիս և նրանց սխալ դասավորությունը նախադասության մեջ։

Ագիտատորի լեզվի հարստացման գործում չափազանց մեծ է ընթերցանության, մանավանդ գեղարվեստական գրականության ընթերցանության նշանակությունը։ Ագիտատորը պետք է տիրապետի գրական արտասանությանը, հմտորեն կիրառի այն իր խոսքի մեջ։

Բրոշյուրում հանգամանորեն ցույց է տրված, թե ինչպես պետք է ագիտատորը նախապատրաստի ու անցկացնի իր յուրաքանչյուր ելույթը։ Հեղինակը կոնկրետ օրինակներով, և առաջին հերթին մեծ առաջնորդներ Լենինի և Ստալինի ճառերի և աշ-

խատուցթյունների հիման վրա ցույց է տալիս, թե ինչպես պետք է խնամքով նախապատրաստել ու անցկացնել ելույթները։

Ագիտատորը-բոլշևիկյան ճշմարիտ խոսքի քարոզիչը, ժողովրդական հռետորը, ժամանակ և ջանք չպետք է խնայի կատարելագործելու իր լեզվական վարպետությունը, հարստացնելու իր լեզուն։

---

ԼԵԶՈՒՆ ԶԱՐԳԱՑՄԱՆ ԵՎ ՊԱՅՔԱՐԻ ԶԵՆՔ Է։

Ի. ՍՏԱԼԻՆ

Հռոմեական կայսր Կարլ հինգերորդը ասում էր, որ իսպաներենով վայել է խոսել աստծո հետ, ֆրանսերենով՝ բարեկամների, գերմաներենով՝ հակառակորդների, իտալերենով՝ կանանց սեռի հետ։ Բայց եթե նա տիրապետեր ռուսաց լեզվին, ապա իհարկե, դրան կավելացներ, որ այդ լեզվով վայել է խոսել բոլորի հետ։ Քանի որ նրա մեջ կգտներ իսպաներենի ճոխությունը, ֆրանսերենի կենդանությունը, գերմաներենի ամրությունը, իտալերենի քնքշությունը, բացի դրանից, հունարենի և լատիներենի հարստությունը և արտահայտությունների մեջ ուժեղ հակիրճությունը։

Մ. ԼՈՄՈՆՈՍՈՎ

## ՊԱՏԱՍԽԱՆՈՒՄ ԵՆՔ ԱԳԻՏԱՏՈՐՆԵՐԻ ՀԱՐՑԵՐԻՆ

# ԻՆՉՊԵՍ ՍՏԱՆԱԼ ՀԱՅԵՐԵՆ ԼԵԶՎՈՎ ԼՈՒՅՍ ՏԵՍՆՈՂ ԳՐԱԿԱՆՈՒԹՅՈՒՆԸ

(Վրացական ՍՍՌ Ախալքալակի շրջան, Բեժանո գյուղ ընկ. Հակոբ Անտոնյանին)

Հայերեն լեզվով լույս տեսնող ամբողջ գրականության վաճառքի գործով Հայկական ՍՍՌ-ում զբաղվում է Հայգիրքը։

Անհատական կարգով ստանալու համար գրքի արժեքը պետք է փոխանցել փոստով Հայգրքին (Երևան, Տերյան փողոց № 91), իսկ կազմակերպությունները կարող են գումարը փոխանցել Հայգրքի հաշվին (Երևան, Պետբանկի № 45153001)։

Կազմակերպությունները և անհատները գումարի փոխանցման հետ պետք է ուղարկեն իրենց ցանկացած գրքերի ցուցակը և իրենց ճիշտ հասցեն։ Գրականությունը կարելի է ստանալ նաև վերադիր վճարով, որի համար պատվիրատուն պետք է ուղարկի իր պահանջած գրքերի ցուցակը և հասցեն, իսկ կազմակերպությունները նաև իրենց ընթացիկ հաշվի №-ը։

Հայերեն լեզվով լույս տեսնող գրականության 1949 թ. հրատարակության թեմատիկ պլանը ուղարկված է բոլոր ռեսպուբլիկաների գիրք վաճառող կազմակերպություններին, որին ծանոթանալով կարելի է պատվիրել ցանկացած գրականությունը։

# ՆՈՐ ԳՐՔԵՐ

*Հայաստանի Պետհրատի հրատարակությամբ լույս են տեսել հետևյալ գրքերը՝*

Ֆ. ԷՆԳԵԼՍ.— «Աշխատանքի դերը կապկի մարդու փոխակերպվելու պրոցեսում»: *Տիրաժ 5000 օրինակ, 21 էջ, գինը՝ 50 կոպեկ,*

Ա. Մ. ՊՐՈԽՈՐՈՎ.— «Ինչ է ռադիոլոկացիան»: *Տիրաժ 2000 օրինակ, 48 էջ, գինը՝ 2 ռուբլի, 1949 թիվ:*

Վ. ՕՍԵԵՎԱ.— «Հայրենական բանկոնը» *(պատմվածքներ): Տիրաժ 3000 օրինակ, 99 էջ, գինը՝ 3 ռուբլի, 1948 թիվ:*

---

Պատասխանատու խմբագիր՝
Հ. ԱՅՎԱԶՅԱՆ

**ԳԻՆԸ 50 ԿՈՊ.**

*ՎՖ 01019 Պատվեր № 275 Տիրաժ 8.500*
*Պոլիգրաֆ. և հրատ. վարչ. № 2 տպարան, Երևան*

Отдел Пропаганды и агитации ЦК КП(б)
Армении
**БЛОКНОТ АГИТАТОРА**
№ 6 1949 г.